# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ, ԹԻՒ 6 ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ. ՅՈՒՆԻՍ, 1918 ՏԱՍԸ ՍԷՆԹ


## ՔԱԼԻՖՕՐՆԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆԸ

* * *

Բաւական տարիներէ ի վեր մտադրութիւն եղած Քալիֆօրնիոյ Հայութեան համար առանձին առաջնորդութիւն ունենալու գաղափարը՝ անցեալ տարի ձեռնարկի վերածուեցաւ, և այժմ ուրախ ենք «Էջմիածին»ի սիւնակներուն մէջ յայտարարելու թէ խնդիրը գործնական ճամբու մէջ մտած է արդէն:

Անցեալ տարի Ֆրէզնոյի Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ Ընդհանուր Ժողովը ձեռք առնելով այս խնդիրը, սկզբունքով ընդունեց զայն և պաշտօն տուաւ յատուկ ընտրուած յանձնախումբի մը որ, կոչ ընելով Ֆաուլըրի, Լօս Անճէլըսի և Եդեմի Եկեղեցեաց Ընդհ. Ժողովներուն, անոնցմէ ընտրուած որոշ թուով անձերով կազմուեցաւ «Քալիֆօրնիոյ Հայոց առաջնորդութեան Պատգամաւորական Ժողով», որուն կը մասնակցէին 14 աշխարհական և երեք եկեղեցական անձինք. Ֆրէզնոյէն 5, Ֆաուլըրէն 3, Եդեմէն 3, Լ. Անճըլըսէն երկու հոգի: Եկեղեցականներն էին Տ. Վարդան Ծ. Վարդապետ Գասպարեան, Հովիւ Ֆրէզնոյի Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ, Տ. Թէոդորոս Քհն. Իսահակեան՝ Հովիւ Ֆաուլըրի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյն: Ժողովի փափաքանաց համաձայն ներկայ եղաւ նաև Գեր. Տ. Բարգէն Եպիսկոպոս Կիւլէսէրեան: Ժողովին Ատենապետ ընտրուեցաւ Ս. Վ. Մելգոնեան, Ատենադպիր՝ Մ. Խօյլիկեան, Նախագահ՝ Տ. Վարդան Վարդապետ: Այնուհետև մի քանի ժողովներով հաստատուելիք առաջնորդութեան պայմաններուն նկատմամբ խորհրդակցելէ վերջ, որոշուեցաւ՝ ըստ օրինի՝ խնդիրը ներկայացնել Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետին ընդարձակ խնդրագրով մը, զոր կը հրատարակենք իր ունեցած պատմական կարևորութեան համար:

Վեհափառ Հայրապետը, ներկայ ազգային ամենադառն վիճակներուն մէջ անգամ, բարեհաճած էր նկատողութեան առնել իրեն մատուցուած այդ գրութիւնը և Դիւանական պատասխանով մը յայտնած է թէ խնդիրը Ամերիկայի Հայոց Երեսփոխանական ժողովին յանձնած է: Վերջինս ալ սկզբունքով ընդունած է Քալիֆօրնիոյ Հայոց առաջնորդութեան օգտակարութիւնը և տեղեկագրած է Նորին Վեհափառութեան, որ չենք գիտեր թէ ճիշտ այս պահուս ինչ ահաւոր վտանգներու և տագնապներու մէջ կը տառապի:

• • •

## ՊԱՏՃԷՆ ԽՆԴՐԱԳՐԻՆ

Ֆրէզնօ, Քալ. 11 Փետր. 1917

Վեհափառ Տ. Տ. Գէորգ Ս. Կաթողիկոս Ամենայն Հայոց ի Սուրբ Էջմիածին

Վեհափառ Հայրապետ,

Ամերիկայի Միացեալ Նահանգները, Արեւելքէն Արեւմուտք, հեռի են հազարաւոր մղոններով, և այս նահանգներու մէջ է որ ցրուած են Հայոց գաղութներ:

Մենք, Քալիֆօրնիոյ Հայերս, կը գտնուինք Արեւմտեան նահանգներու ծայրագոյնին վրայ, և հետևաբար երեք հազար հինգ հարիւր մղոն հեռի կը գտնուինք Ամերիկայի Հայոց Առաջնորդութեան կեդրոնէն:

Գալիֆորնիոյ Հայ գաղթականութեան ծագումը կլոր Թուականով մը սկսած է աւելի երեսուն տարի առաջ, Ֆրէզնոյի մէջ շատ աննշան Թուով: Բայց Հայ ժողովուրդը, որ կը սիրէ հողագործութիւնը, հետզհետէ աճած և բազմացած է այս նահանգի մէջ ուշագրաւ համեմատութեամբ: Այսպէս աւելի քսան տարի առաջ Ֆրէզնոյի և շրջակայից մէջ երեք հարիւր և վաթսուն հինգ հոգի կային, իսկ այսօր՝ այդ Թիւը քառասուն անգամ և քիչ մըն ալ աւելի բազմապատկըուած է, և այս բազմապատկեալ Հայոց մեծամասնութիւնը ժողովուրդ է Հայց. Եկեղեցւոյ:

Գալիֆորնիոյ մէջ Հայերը ոչ միայն գաղթականութեամբ շատցած են, այլ և կը շատնան ծնընդեամբ, այնպէս որ բնիկ Ամերիկացի Հայ սերունդ մը կայ այսօր այս երկրին մէջ: Դարձեալ Գալիֆորնիոյ Հայերը, շնորհիւ իրենց հողագործութեան, տոկունութեան և ժրութեան, հողատէր և տանուտէր եղած են, այսինքն տեղաւորուած են այս նահանգին մէջ: Մերձաւորապէս քսան հազար էյքր կոշտ կամ կիսամշակ հողեր Հայոց աշխատանքով ու քրտինքով մշակուած ու դրախտի վերածուեր է Սան Ոգին հովտին մէջ, կեդրոն ունենալով Ֆրէզնօ քաղաքը, որ միանգամայն կեդրոնն է Գալիֆորնիա նահանգին, և որ՝ իր կարգին՝ արագ արագ կը շէննայ և կը մեծնայ:

Գալիֆորնիոյ Հայերը ստոյգ ջանքեր ըրած են և կընեն, պահելու համար իրենց մայրենի եկեղեցին, մայրենի լեզուն և Հայրենի կեանքը: Եւ ասոր համար շինած են եկեղեցիներ: Ֆրէզնօ, որ Գալիֆորնիոյ Հայ գաղութին ալ կեդրոնն է և մայրը, ունեցած է իր առաջին եկեղեցին (1902-1913), որ հրդեհուեցաւ, և Հայք աւելի փառաւորը շինեցին իրենց Մայր Եկեղեցին (1914): Նոյնպէս Ֆաուլըր և Եդեմ ունին իրենց եկեղեցւոյ շէնքերը. Րիտլի ձեռնարկած է ունենալ իրեն եկեղեցւոյ շէնքը, իսկ Լօս Անճէլըսի և Սան Ֆրանսիսկոյի Հայերը Եպիսկոպոսականաց եկեղեցիներու մէջ կը կատարեն իրենց պաշտամունքը: Կան նաև Հայեր Սէլմա, Տէլ Րէյ, Փարլիէր, Գինկզպըրկ, Մալակա, Գլօվիս, Սանկըր, Հէնֆըրտ, Թուլարա և այլ տեղեր, որոնցմէ ոմանց ժողովուրդը կու գան Ֆրէզնոյի կամ Ֆաուլըրի եկեղեցիները. ոմանք շատ քիչ անգամ եկեղեցի կը տեսնեն, ոմանք ալ օտար եկեղեցիներ կ'երթան: Իսկ կան Հայ գաղութներ, ինչպէս Թէքսաս նահանգին մէջ, որ զուրկ են կրօնական և ազգային ամէն տեսակ մխիթարութենէ:

Գալիֆորնիոյ Հայեր ունին նաև իրենց յատուկ Հայ դպրոցներ, ուր հայերէն գրել կարդալ կը սորվին մանուկ և պատանի Հայեր, աղջիկ թէ մանչ, Ամերիկեան վարժարաններէն աւելցած իրենց ժամերուն մէջ: Ունին նոյնպէս Հայ գրադարաններ աւելի հասուններուն և առ հասարակ բոլոր Հայոց համար, և այս դպրոցներ ու գրադարաններ՝ ընդ հովանեաւ Հայց. Եկեղեցւոյ:

Այս համառօտ ուրուագիծը Գալիֆորնիոյ Հայոց վիճակին նկատմամբ, ցոյց կու տայ՝ թէ այս նահանգի մէջ Հայութիւն մը կայ, որ անհրաժեշտ պէտք ունի կազմակերպուելու առանձին առաջնորդութեան մը վարչութեամբ, ուղղակի Ամենայն Հայոց Կաթողիկոսութեանդ իրաւասութեան և իշխանութեան ներքև:

Այս պէտքը շատոնց զգալի եղած է թէ Գալիֆորնիոյ Հայոց մէջ և թէ Գալիֆորնիայէն դուրս Ամերիկայի Հայ գաղութին կազմակերպութեան և պահպանման խնդրին հետ հետաքրքրուող շրջանակներու մէջ: Այնպէս որ այս մասին խորհրդակցութիւններ եղած են հանդուցեալ Սարաճեան Սրբազանի առեն, և ետքը Ձեր Վեհափառութեան լիազօր ներկայացուցիչ՝ Գեր. Տ. Գէորգ Արքեպիսկոպոս երբ Ամերիկայ եկաւ առաջնորդական խնդիրները կարգադրելու համար, այդ առթիւ ալ Նորին Գերապատուութեան ուշադրութեան յանձնուած է Ամերիկայի մէջ մէկէ աւելի առաջնորդութիւն հաստատելու խնդիրը, Ֆրէզնոյի հովիւ Տ. Վարդան Ծ. Վարդապետ Գասպարեանի կողմէն տրուած տեղեկագրին մէջ (1913 Սեպտ. 16):

Բայց այս բոլորը արդիւնաւոր ձևի մը մէջ չդրուեցան մինչև հիմայ, և այս պատճառով Գալիֆորնիոյ և առ հասարակ բոլոր արևմտեան նահանգաց Հայ գաղութները մեծապէս տուժեցին և կը տուժեն միշտ:

Եւ որպէսզի մեր գաղութներուն կրած վնասները վերջ գտնեն՝ առանձին առաջնորդութեան մը հաստատութեամբ, պարտք կը համարինք խոնարհաբար Ձեր Վեհափառութեան ուշադրութիւնը հրաւիրել քանի մը գլխաւոր իրողութիւններու վրայ:

Ա. — Ամերիկեան դրամով և ծրագրով զօրաւոր փրօփականդ մը կը մղուի անհովիւ և անկազմակերպ Հայաստանեայց Եկեղեցւոյ ժողովուրդը որսալու համար: Օտար և յարանուանական եկեղեցիներ դուռ ու դադար չունին: Ասոնց քարոզիչներն ու գործիչները կը հրապուրեն ու կը հրաւիրեն մեր եկեղեցւոյ զաւակները իրենց եկեղեցին:

— Արդ՝ եթէ առանձին Առաջնորդութիւն մը ունենանք, պիտի կազմակերպուին մեր ցրուեալ գաղութներուն եկեղեցական և կրթական գործե-

րը, մօտէն հսկողութիւն պիտի կատարուի և կարելի եղած միջոցները պիտի ստեղծուին մեր ժողովուրդը բանելու և օտար փրօփականտին առջևը առնելու համար:

Բ.— Մեր եկեղեցիներուն և ժողովրդեան հոգևոր պէտքերը հոգալու համար կարօտ կը քաշենք յարմարագոյն հոգևորականներու:

— Արդ՝ եթէ առանձին առաջնորդութիւն մը ունենանք, ան պիտի կրնայ պարտ ու պատշաճ տնօրինութիւնները ընել տեղւոյն վրայ: Ամերիկայի Հայ եկեղեցիներուն յատուկ և յարմար հոգևորականներու պատրաստութիւնը ամենակենսական խնդիր մըն է, որուն լուծումը առաջնորդութիւնը միայն պիտի կրնայ տալ:

Գ.— Ամերիկայի մէջ նորհաս սերունդին կրօնական և ազգային կրթութեան գործը կայ: Գիտէ Ձեր Վեհափառութիւնը, որ Ամերիկայի մէջ Կիրակնօրեայ Դպրոցներ կան, և բոլոր Ամերիկացի մանուկներ պատրաստ են այդ դպրոցները երթալ և ստանալ իրենց կրօնական կրթութիւնը, վասն զի քաղաքային դպրոցներու մէջ կրօնական դասեր չկան: Արևելեան նահանգներու մէջ Հայ փոքրիկներ կերթան Ամերիկեան կիրակնօրեայ դպրոցներ և կառնեն կրօնական կրթութիւն որ բողոքական է առ հասարակ: Իսկ Քալիֆորնիոյ մէջ Հայեր ջանքեր բրած են հաստատել Հայ Կիրակնօրեայ Դպրոցներ, որպէս զի Հայ փոքրիկներ և պատանիներ Հայաստանեայց Եկեղեցւոյ կրօնական կրթութիւնը առնեն:

Արդ՝ առանձին առաջնորդութիւն մը միայն կարող պիտի ըլլայ կազմակերպել պէտք եղածին պէս այս դպրոցները, հսկել անոնց վրայ և արդիւնաւորել:

Դ.—Ունեցած ենք, ունինք և անշուշտ պիտի ունենանք այս երկրին ազատութենէն և օրէնքներէն ազդուած ամուսնական բարդ խնդիրներ, որոնք տեղւոյն վրայ առխողաբար և անմիջական կերպով կարգադրուելու պէտք ունին ձեռնհաս հոգևոր իշխանութեան կողմէն: Կարելի չէ այսպիսի խնդիրներու լուծման և կարգադրութեան համար դիմել հազարաւոր մղոններով հեռու Ուստրի առաջնորդարանը և սպասել ընդ երկար, որ կարգադրութիւններ ըլլան:

Արդ՝ առանձին առաջնորդութիւնը շատ դիւրութեամբ պիտի հոգայ ամուսնական խնդիրներու մասին և տեղւոյն վրայ, իրազեկ անոնց բոլոր հանգամանքներուն, և պիտի կարգադրէ ինչ որ արժան է և պատուաբեր Հայաստանեայց Եկեղեցւոյ և Հայ ընտանեկան և ընկերական կեանքի համար:

Ե.— Հայ գաղութը Ամերիկայի մէջ կը ներկայացնէ սովորոյթներու և բարքերու պէսպիսութիւն մը, բնաշխարհի իւրաքանչիւր քաղաքին և գիւղին համեմատ: Այդ բոլորը աններդաշնակութիւն մը երևան կը բերեն Ամերիկեան միջավայրին մէջ, նշանտուքներու, հարսնիքներու, կնունքներու առթիւ և այլն, և անպատշաճ ու շատ անգամ անպատուաբեր մեր եկեղեցւոյն և ազգին անուան:

Արդ՝ որպէս զի այս երկրին պատշաճ և Հայաստանեայց Եկեղեցւոյ ու ազգային սովորութեանց և ոգւոյն համեմատ կարգ ու կանոնի տակ առնուին այսպիսի բաներ և օրինադրուին, հարկ է որ ունենանք մեր առանձին առաջնորդութիւնը, ամեն ինչ իր միջավայրին մէջ քննելու և ըստ այնըմ պարտ ու պատշաճ կարգեր ու կանոններ հաստատելու համար:

(Մնացեալը յաջորդիւ)

---

## ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՀԱՅՑ. ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ ԹԵՄԵՐՈՒՆ

Ամերիկայի Հայոց Առաջնորդական վիճակին Գերապատիւ և Արժանաշնորհ Թեմակալ հովուաց և Պատ. Թեմական Ժողովոց, եկեղեցական Հոգաբարձութեանց և Հայց. Առաքել. Ս. Եկեղեցւոյ համայն ժողովուրդին, ի գիտութիւն կը յայտարարուի:

Ա.— Ամերիկայի Հայոց Երեսփ. Ժողովին նոր շրջանի Ա. նիստը գումարուած է ըստ նախորդ յայտարարութեան Ազգ. Առաջնորդարանիս, Ապրիլ 7-8 1918ին, Ուստրի մէջ, մասնակցութեամբ 34 թեմական երեսփոխաններու: Ժողովին նիստերուն արձանագրութիւնն արդէն իսկ մամլոյ յանձնուած է:

Բ.—Նորընտիր Ազգ. Կեդր. Վարչութիւնը իր առաջին նիստն ունեցաւ Ապրիլ 23ին՝ Պոստոնի մէջ: Կրօնական Ժողովն իր դիւանը ընտրեց, ատենապետ՝ Շահէ Ծ. Վ. Գասպարեան, Ատենադպիր՝ Արժ. Տ. Եղիշէ Քհնյ. Գալչընձեան: Տնտեսական Ժողովոյ դիւանը կազմուեցաւ հետևեալ կերպով. Ատենապետ Տիար Աւետիս Պ. Սէլեան, Ատենադպիր՝ Տիար Արմենակ Գ. Պէրպէրեան:

Գ.—Ամենայն Հայոց Վեհ. Հայրապետը Թ. 1842 և 3 Նոյեմբեր 1917 թուականաւ և իբրև Առաջնորդական Տեղապահ Գեր. Տ. Բաբգէն Եպիսկոպոսի ուղղեալ դիւանական պաշտօնագրով մը, բարեհաճած է Ամերիկայի Հայոց Առաջն. վիճակին նկատմամբ Վարչական կարեւոր անօրինութիւններ ընել և վաւերացնելով 1917 Փետրուար 18ի և Յուլիս 29ի Երեսփ. Ժողովներու կարգադրութիւնները Առաջնորդական խնդրոյն նկատմամբ կարեւոր հրահանգներ տալ եկեղեցական գործոց բարւոքման համար:

Հայրապետական վաւերացումն ու անօրինութիւնները պարունակող պաշտօնագրերն Փոստն հասած են 1918 Ապրիլ 9ին, և նախորդ Առաջնորդական Տեղապահ Գեր. Տ. Բաբգէն Սրբազանի կողմէ յանձնուած են Առաջնորդարանիս: Կեդր. Վարչութեան որոշմամբ հրատարակութեան կուտանք յիշեալ պաշտօնագրին զուտ Առաջնորդական խնդրոյ և հոգեւական թեմերու ընդհանուր գործերուն վերաբերեալ մասը ի գործադրութիւն:

Դիւան
Վեհափառ Կաթողիկոսի
Ամենայն Հայոց
Թիւ 1842

3 Նոյեմբեր, 1917 ամի, Ի Ս. Էջմիածին

Ամերիկայի Հայոց Առաջնորդական Տեղապահ
Գեր. Տ. Բաբգէն Եպիսկոպոսին

«Ազգիս Վեհափառ Հայրապետի հրամանով Դիւանս, ի պատասխան Օգոստոս 25ի Ձեր գրութեան յայտնում է, որ նախ՝ Տ. Արսէն Ծ. Վ.ի 1916 թ. Նոյեմբեր 7 թ. 1356 հրաժարականն ընդունուած է Նորին Ս. Օծութեան կողմից և տարւոյս Յունուարի 28 թ. 177 գրութեամբ առաջարկուած է նորան խուսափող լինել և ըստ պարագայից ընթանալ, համերաշխ գործակցութեամբ, հակառակ պարագային արտօնեց ներկայացնել իր հրաժարականը, ըստ Սահմանադրութեան, Կեդրոնական Երեսփոխանական ժողովին, որպէս զի վերջինս ձեռնարկէ առաջնորդական Տեղապահի ընտրութեան և ապա Առաջնորդի ընտրութեան:

Երկրորդ՝ մինչև այժմ Առաջնորդի ժամանակաւոր տեղապահութեան համար որևէ գրութիւն ստացուած չէ Նորին Սրբութեան կողմից, բացի մի [illegible]գրից, որից դժբաղդաբար ոչինչ հասկնալ չ[illegible]ելի. այդ գրութեան ստանալուց յետոյ Առաջնորդական Տեղապահութիւնը յանձին ձեր ընդունուեց Նորին Սրբութեան կողմից:

Երրորդ՝ Վեհ. Հայրապետի հրամանն է, ըստ հնարից փութով ձեռնարկել նոր առաջնորդի ընտրութեան գործին, որպէսզի Ամերիկահայ համայնքը առանց Առաջնորդի մնալու վիճակի մէջ չմնայ, և չուծանայ իր մայրենի եկեղեցու կարգերից:

Չորրորդ՝ Առաջնորդ ընտրել ըստ Սահմանադրութեան և ըստ կարգաց հայ եկեղեցու, ընտրութեան ցանկի մէջ չմուծելով Կիլիկիոյ վանականներին:

Հինգերորդ՝ առաջարկել Տ. Արսէն Ծ. Վարդապետին յանձնել իր մօտ եղած առաջնորդական ամէն տեսակ գործերը, հաշիւները, գոյքը և այն որոնք այժմ մնում են իր մօտ:

Վեցերորդ՝ աշխատել գաղութի բոլոր համայնքների և եկեղեցիների մէջ համերաշխութեան ոգին մտցնել, կապելով Առաջնորդարանի հետ բոլոր համայնքները, հոգաբարձութիւնները, եկեղեցականները և եկեղեցիները:

Եօթներորդ՝ Սահմանադրութեան վերաքննութեան ձեռնարկել և վերջնական փոփոխութիւնները առաջարկել ի հաստատութիւն Նորին Սրբութեան:»

Այս պաշտօնագրին ներփակուած էր նաև Ամերիկայի նախորդ Առաջնորդ Գեր. Արսէն Ծ. Վարդապետի ուղղեալ Նոյ. 3, 1917 թուակիր և 1851 համարաւ դիւանական գրութիւն մը, որ կրկին չեշտելէ յետոյ թէ Ամենայն Հայոց Վեհ. Հայրապետը բարեհաճած է ճանչնալ և հաստատել Ամերիկայի Հայոց Առաջնորդական Տեղապահը, որուն տուած է իր հրահանգները թեմի գործերը վարելու համար մինչև Նոր Առաջնորդի ընտրութիւնը, Հայրապետական Դիւանը՝ ըստ պատուէրի Նորին Սրբութեան «հրահանգ կուտայ Տ. Արսէն Ծ. Վարդապետին իր մօտ եղած առաջնորդական ամէն տեսակ գործերը, հաշիւները, գոյքը ևլն. յանձնել Առաջնորդական Տեղապահին:»

Սոյն վերջին պաշտօնագրին մասին, Առաջնորդարանի կողմէ հաղորդուած է Գեր. Տ. Արսէն Ծ. Վ. Վեհունիին, այսօրուան թուականաւ, և խնդրուած է որ հաճի Ազգ. Առաջնորդարան գալ, ստանալու համար Հայրապետական դիւանի գրութիւնը, և փոխանցելու համար դիւանական գոյքերը ըստ հրամանի Ն. Ս. Օծութեան:

Առաջնորդարանս իր տեղապահով և Կեդր. Վարչութեան կրկին ժողովներով, վստահաբար

կ՚ակնկալէ որ Առաջնորդարանի խնդրոց մասին տարիէ մը ի վեր մտքերու մէջ գոյութիւն ունեցող կարծեաց տարբերութիւնները, Հայրապետական այս բացորոշ հրահանգներէն յետոյ խաղաղ վերջ պիտի գտնեն, և Ն. Սրբութեան Ամենայն Հայոց Հայրապետի բաղձանաց և յանձնարարութեան համեմատ, համերաշխ գործակցութեան ոգւով իրարու ձեռք պիտի կարկառեն, և սիրով ու սրտով՝ ըստ Սահմ. օրինաց, պիտի աշխատին և գործակցին բոլոր եկեղեցական «համայնքներ, հոգաբարձութիւններ, եկեղեցականներ և եկեղեցիներ,» ի շինութիւն գաղութիս Հայց. Առաքել. Ս. Եկեղեցւոյ ժողովուրդին և ի մխիթարութիւն Մայր Աթոռոյ վշտահար Գահակալին:

Ողջունիւ սիրոյ, մնամ աղօթարար

Առաջն. Տեղապահ Հայոց Ամերիկայի
ՇԱՀԷ Ծ. ՎՐԴ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

Թիւ 178
Ուստըր.
Ապրիլ 24, 1918

---

## ԱՆՑԵԱԼ ԶԱՏԻԿԸ

* * *

Այս տարի ալ Զատկական տօները սովորական հանդիսաւորութեամբ կատարուեցան Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ մէջ: Մեզի հետ ունէինք Հոգեշնորհ Տ. Թէոդորոս Քահ. Իսահակեանը, որ Աւագ Հինգշաբթի օրը պատարագեց և Աւագ Ուրբաթ գիշեր ալ քարոզեց: Ծաղկազարդէն սկսեալ մինչև Զատկի առաւօտուն կատարուած բոլոր ժամերգութեանց և պատարագներուն եկեղեցին միշտ լի էր ժողովուրդով: Բազմաթիւ հաւատացեալներ Ս. Հաղորդութեան արժանացան: Նորութիւն ըլլալով Պ. Գ. Փրօֆի Գալֆայեանի հեղինակած պատարագի եղանակները երգուեցան միաձայն, երկսեռ խումբի մը կողմանէ, երգեհոնով, և հիմակ ալ կը շարունակուի ու խումբը կը պատրաստուի բազմաձայն երգելու:

Կիրակի առաւօտ պատարագեց ու միութեան վրայ պատշաճ քարոզ խօսեցաւ եկեղեցւոյս հովիւը: Այդ օրուան բազմութիւնը երբեք հազարէն պակաս չէր: Որքա՜ն փափաքելի է որ սովորական կիրակիներուն ասոր քառորդը գոնէ եկեղեցի յաճախէ, ոչ թէ արտաքին հետաքրքրութենէ՝ այլ ներքին ըղձանքէ՝ աղօթքի ազդեցութենէ մղուած: Այն ատեն ամէն Կիրակի կըլլայ ԶԱՏԻԿ:

## ՏՕՆԵՐ

Հետևեալ երեք մասնաւոր Տօները ունինք
Յունիս ամսոյ մէջ

---

Ա. Յունիս 2: Երևումն Սրբոյ Խաչին: Տեղի ունեցած է Երուսաղէմի մէջ 351 թուականին, Կիւրեղ Եպիսկոպոսի օրով, որ իբրև ականատես, հետևեալ տողերով կը նկարագրէ Կ. Պոլսոյ Կոստանդ Թագաւորին ղրկած իր նամակին մէջ, որ կը կարդացուի նոյն օրը Պատարագէն առաջ: «Պենտէկոստէի սուրբ օրերուն մէջ, Ահեկան ամսուն սկիզբը (Մայիս 7 հին տոմար) ժամը 3ին, լոյսով կազմուած ամենայաղթ խաչը՝ երկինքի մէջ, Ս. Գողգոթայի վերևէն մինչև Ձիթենեաց լեռը, ցոլքերով կ՚երևար: Ու ոչ թէ մէկ կամ երկու մարդոց միայն երևցաւ, այլ քաղաքին բոլոր բազմութիւնը յայտնապէս տեսաւ զայն . . . :»

Բ. 13 Յունիս, Հինգշաբթի. Տօն Համբարձման Յիսուսի:— Մետասան առաքեալներու ներկայութեամբ և անոնց վկայութեամբ հաստատուած անվիճելի իրողութիւն մըն է որ տեղի ունեցաւ Յիսուսի ի մեռելոց յարնելէն քառասուն օր վերջը, Սուրբ քաղաքին մօտիկ, Ձիթենեաց կոչուած սարին վրայ, ուր Յիսուս իր տասնմէկ աշակերտներուն վերջին պատուէրները աւանդելէ յետոյ ինքնին վերացաւ յերկինս և աներևութացաւ:

Ուշադրութիւն. — Այդ օր առաւօտուն Ս. Պատարագ կը մատուցուի մեր եկեղեցին, ժամը 9.30–11:

Գ. 23 Յունիս: Հոգեգալուստ.— Քրիստոնէական կրօնի մէջ յայտնուած հրաշալի իրողութիւններէն մէկն է, Երրորդութեան անձերէն մին, Քրիստոսի, երկինք վերանալէն քիչ օր վերջ, միւս անձնաւորութեան,՝ Ս. Հոգիին երևումը աշխարհի վրայ, որոյ ներկայութիւնը ոչ միայն Քրիստոսի աշակերտք զգացին երբ Ս. քաղաքը տան մը մէջ կ՚աղօթէին, այլ և բազմաթիւ ոչ հաւատացեալ անձեր որոնք հոն ներկայ էին: Այս դէպքին արդիւնքը այն եղաւ որ տգէտ ու ապիկար առաքեալները իմաստնացան, և նոյն պահուն խեղճուկ Պետրոսի պերճախօս քարոզութեամբ հազարաւոր անձինք Ս. հաւատքը ընդունեցին:

Այդ օրը Ս. Երրորդութեան Տօն նկատուած ըլլալով, մասնաւոր հանդիսաւորութեամբ Պատարագ կը մատուցուի Ֆրէզնոյի Ս. Եկեղեցւոյն մէջ, վասն զի այս եկեղեցին կառուցուած է Ամենասուրբ Երրորդութեան անունով:

## ԵՂԲՕՐ ՄԸ ԽՐԱՏՆԵՐԸ ԱՌ ԻՒՐ ԿՐՏՍԵՐՆ

1 — *Ամէն բանի մէջ և ամէն ժամանակ Աստուած մի՛ մոռնար :*

2 — *Ամէն բանէ աւելի առողջութեանդ հոգ տա՛ր :*

3 — *Ամէն ձեռնարկի մէջ՝ ամենակարեւորն է որ ուրիշի համոզումէն առաջ դու ինքն համոզում գոյացնես ներքնապէս :*

4 — *Անձնուէր և զոհողաւէր եղի՛ր կարողութեանդ չափով :*

5 — *Մի՛ ջատագովեր երբեք շռայլութիւնը, ոչ ալ կծծիութիւնը : Հեռացիր թէ շռայլութենէ և թէ կծծիութենէ :*

6 — *Մի՛ օգներ շռայլին եթէ կարող իսկ ըլլաս, և մի՛ ձեռնտու ըլլար ագահին . երկուքն ալ ի զուր կը վատնեն կամ առ ոչինչ կը համարին եղած օգնութիւնն ու ձեռնտուութիւնը :*

7 — *Ո՛րքան կրնաս բարիք ընել, ըրէ՛ . մի՛ զլանար, բայց մի՛ սպասեր ուրիշէն բարիք կամ անձնուիրութիւն, որպէս զի յուսախաբ չըլլաս :*

8 — *Տնտեսագէտ եղի՛ր հաշիւդ գիտցիր, և մի զոհեր երբեք տնտեսագիտութիւնդ ու հաշիւդ, որպէս զի ի վերջոյ ունեցած անձնուիրութիւնդ ալ վրայ տալու չստիպուիս :*

9 — *Անձնական թերութեանդ համար՝ ուրիշի յանցանք վերագրելու մի՛ փորձուիր . ամէն մէկ ձախողութեանդ մէջ, դու ինքզինքդ քննէ ու պատճառը անձիդ մէջ փնտռէ :*

10 — *Ամէն բանի մէջ դատող, կշռող և գործադրող եղի՛ր, որպէս զի անձնուիրութիւնդ ու խղճմտութիւնդ՝ ապերախտութեամբ չի փոխարինուին :*

11 — *Սէրը յաղթող է ամենայնի : Եթէ, սէրը՝ ճշմարտութեան ու բանականութեան համաձայն է, իր յաղթանակն ալ բարի եւ առաքինի կը լինի, իսկ եթէ, կոյր, յոյզի և տարփին ըղձացումի արդիւնք է, անոր տարած յաղթանակն ալ մոլի և չար և անձնակործան կ'ըլլայ :*

12 — *Հաւատարիմ եղիր կատարելապէս, սակայն չեմ յանձնարարեր որ վստահութիւնդ՝ հաւատարի (չափով) . պէտք է որ հաւատարմութիւնդ գերազանց ըլլայ վստահութեանդ :*

Պրուսա

ՍՈՒՔԻԱՍ

Զատկի առթիւ եղած նուիրատուութիւնք

*Տիկին Թուրֆանտա Մովսէսեան՝ Տասներկու հատ գիրք դպիրներու գործածութեան համար :*

*Տիկին Լուսի Եսայեան՝ Սկիհի գեղեցիկ ծածկոց մը :*

*Տիկին Աղաւնի Գասպարեան՝ Թանկագին ծածկոց մը Աւագ Խորանի ճակատին համար :*

*Գէորգ Պէրպէրեան՝ Սկիհի ծածկոց մը, որ ինքը գործած է :*

*Բարեպաշտ մին՝ աշտանակ մը :*

*Ըստ վաղեմի սովորութեան, բոլոր ժողովուրդն ալ իւղագին անունով դրամական նուիրատուութիւն ըրաւ եկեղեցւոյն :*

* * *

Մահագրութիւն

*Տիկին Վարդէր Սիմօնեան, Ապրիլ* 30 :

*Արթուր Վարագեան, Մայիս* 11 :

*Վիքթորիա Ֆէթհի, Մայիս* 15 :

* * *

Հիւանդներ

Պըրնէր Սենիթէրիումին մէջ

*Զարմայր Շէհրեան*
*Տիկին Վարդուհի Թաթարեան*
*Տիկին Աղաւնի Միսաքեան*
*Տիկին Մ. Տէր Յակոբեան*

Գաւառական Հիւանդանոցին մէջ

*Աւետիս Մաղաքեան*
*Մարտիրոս Աւետիսեան*
*Տիկին Շուշան Պետրոսեան*

Իր տանը մէջ

*Օր. Գ. Նշկեան*

---

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

* * *

*Հայ Դպրոցի աշակերտք ամավերջի հաճելի և օգտակար հանդէս մը պատրաստած են, որ տեղի պիտի ունենայ Ս. Երր. Եկեղեցւոյ ներքնասրահին մէջ, Ժամը 8ին :*

## ՄԷԿ ՄԻԼԻՈՆԻ ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԵԱՆԱՌԹԻՒ

Ազգիս վշտահար Կաթողիկոսէն Ազգ. Պատուիրակութեան միջոցաւ հաղորդուած աՀաւոր լուրերու վրայ, Ամերիկայի Ազգային Միութիւնը մէկ միլիոն տոլար հանգանակել որոշած և ձեռնարկած է: Նախապէս նոյն ճամբով պատասխանելով Վեհ. Հայրապետին թէ «Ամբողջ Ամերիկահայութիւնը վրդովուած և անձկալից վիճակի մը մէջ կը գտնուի, սանդրուած նոր կացութեան հետեւանքով, և պատրաստ է կարելի ամէն զոհողութիւն ընելու մեր ցեղին մնացորդին սրբազան գոյապայքարին մէջ իր մասնակցութիւնը բերելու։»
Դուն ալ վրդովու՞ած ես և պատրա՞ստ ես զոհողութեան մէջ առատ բաժինդ բերելու:

---

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Պատ. Հոգամարձութիւնը որոշած է դաշտահանդէս մը սարքել, ներկայ ամսոյս 30ին, Կիրակի օրը, Բինկս Բիվըր կոչուած տեղը: Նոյն օրուան ժամերգութիւնը հոն պիտի կատարուի: Կէսօրէն ետքը պիտի մկրտուին բազմաթիւ անկնունք մնացած մեծ ու փոքր երախաներ: Թրէգնոյի և հեռաւոր շրջականներու բոլոր Հայերը իրենց պարագաներով և օրուան ուտելիքներովը հոն պիտի ըլլան, քանի որ ամէն ոք գիւրութիւն ունի և չունեցողը ունեցող բարեկամէն ու դրացիէն օգտուելու բնական իրաւունքն ունի:

★ ★ ★

—Բաղաքիս Հայ. Որբախնամ Ընկերութիւնը ընդհանուր ժողով ունեցաւ Մայիս 24ին, Եկեղեցւոյ ներքնայարկը: Ի միջի այլոց որոշուեցաւ տասը որբեր որդեգրել և խնամել Երուսաղէմ, Հ. Բ. Ը. Միութեան հաստատած որբանոցին մէջ, որուն համար տարեկան վեց հարիւր տոլարի ծախք մը քուէարկուեցաւ:

—Եկեղեցասէր Տիկնանց Միութեան Ընդհանուր ժողովը տեղի ունեցաւ Մայիս 20ին: Վարչութեան հրաժարեալ մէկ անդամին տեղ իբր ատենադպիր ընտրուեցաւ Տիկին Հայկուհի Որբաթիկեան: Ներկայ էր այս ժողովին այրի տիկին Մ. Թոփրաճանեան, որ ցեղով և դաւանանքով տարբեր ըլլալով հանդերձ, ի յարգանս իր ողբացեալ ամուսնոյն՝ Տր. Յ. Թոփրաճանեանի, իրեն մնացած հարստութեան կարեւոր մէկ բաժինը Հայութեան կտակած է: Ժողովէն վերջ ի պատիւ բարերար տիկնոջ ուղերձներ խօսուեցան և մեծարանքներ ու պատուասիրութիւններ տեղի ունեցան

## ԵԴԵՄ

Նոր Կիրակի. Ս. Աստուածածին Եկեղեցւոյ մէջ պատարագելով քարոզ խօսեցաւ Լօս Անճէլըսի Հոգեւոր Հովիւ Տ. Սոոմ Քահանայ Մելիքեան:

* * *

## ՖԱՈՒԼԸՐ

Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյն մէջ, Զատկական բոլոր կարգերը կատարեց ու քարոզեց տեղւոյն Հոգեւոր Հովիւ Տ. Մելքիսեդեկ Քահ. Տէր Մկրտիչեան:

* * *

## ՎԱԹՍԸՆ, ՐԻՏԼԻ

Նոր Կիրակի. Ազգային սրահին մէջ պատարագեց և քարոզ խօսեցաւ Տէր Թէոդորոս Քահ. Իսահակեան:

---

Մկրտուեցան՝

Թ. Աւետիսեանի երախան՝ Յարութիւն
Ա. Եսայեանի երախան՝ Ովաննա
Ա. Բարիկեանի երախան՝ Յովհաննէս
Տր. Ա. Շահպազեանի երախան՝ Հայկ-Յարութիւն
Մ. Պալեանի երախան՝ Սարգիս Տիգրան
Մ. Շաղուկեանի երախան՝ Յարութիւն
Մ. Շաղուկեանի երախան՝ Սաթենիկ
Յ. Զուլճեանի երախան՝ Տիրան

* * *

Ամուսնութիւն

Սարգիս Օտապաշեան և Մարիամ Գասպարեան պսակուեցան Եկեղեցւոյս մէջ, Մայիս 12ի իրիկունը:

• • •

Նշանախօսութիւն

Տր. Գրիգոր Ալուճեան նշանուեցաւ Օր. Շամիրամ Աժտէրեանի հետ, Մայիս 25ին:

---

Հոգեհանգիստ

Հանգուցեալ Տր. Յ. Թոփրաճանեանի և Տիկին Վիրգին Եանըքեանի համար հոգեհանգստեան պաշտօն կատարուեցաւ Մայիս 12ին

## ՏՕՆԱՑՈՅՑ

* * *

ՅՈՒՆԻՍ

1. Շբ. — ԻԸ օր Յինանց։

2. Կիր. ԳԶ.—ԻԹ օր և Երդ Կիրակի Յինանց։ Տօն Երևման Սրբոյ Խաչին։

9. Կիր. ԲԿ. — ԼԶ. օր և Չրդ Կիր. Յինանց։

13. Եշ. ԴԿ.— Խ օր Յինանց։ Տօն Համբարձման Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի (Վինակ)։

14. Ուր. ԱԶ. — ԽԱ. օր Յինանց։ Սկիզբն Պահոցն

16. Կիր. ԲԶ. — ԽԳ. օր և Էրդ Կիրակի Յինանց։ Երկրորդ Ծաղկազարդ։

23. Կիր. ԱԿ. — Ծ. օր Յինանց։ ՏՕՆ ՀՈԳԻՈՅՆ ՍՐԲՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ։ Պենտեկոստէ։ Բարեկենդան Եղիական Պահոց։

30. Կիր. ԱԶ.— Սկիզբն Յարութեան Կիւրակէից։ Ա. Կիրակի զկնի Հոգեգալստեան։ Յիշատակ Եղիա Մարգարէին։

## Ս. ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ

Գրադարանի Միութիւն

*Գրադարանի Միութիւնը Դաշտահանդէս մը պիտի ունենայ Յունիս 9ին։*

*Նոյն Միութիւնը մեծ պատրաստութիւն կը տեսնէ պատշաճ հանդէսով մը տօնելու մեր անմահ Թարգմանչաց յիշատակը Յուլիս 25ին, Հինգշաբթի օր։*

## ՔԱԼԻՖՈՐՆԻԱ ՆՈՐ ԵԿՈՂՆԵՐՈՒՆ

*Արեւելեան նահանգներէն մեծ թուով Հայեր սկսած են Քալիֆորնիա գալ ու հաստատուիլ այս շրջանակին մէջ՝ լաւ ըլլալով այգեգործութեան մէջ առաջ եկած յաջողութեան մասին։ Մենք չենք գիտեր թէ որչափ շիտակ է այսպիսիներու ընթացքը, բայց կը փափաքինք գիտնալ անոնց հաստատուած տեղերը ու ծանօթանալ անոնց հետ։*

## ԿԱՐԵՒՈՐ ԱԶԴ

Ֆաւլըրի Հայոց հոգեւոր Հովիւ

*Տէր Մելքիսեդեկ քահանայ Տէր Մկրտիչեանի հասցէն է Ֆաւլըր, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ դիմացի տունը։ Թելէֆոնին թիւն է 866։*

*Ամեն անոնք որ ունէ կերպիւ պէտք ունենան Նորին Արժանապատուութեան, կը հրաւիրուին դիմել յիշեալ հասցէին Մեր ժողովուրդէն ամեն անոնք որ տակաւին այցելութիւն մը ընդունած չեն Տէր Հօր կողմէն, վստահ ըլլալու են թէ մոռացութեան կամ չկամութեան արդիւնք չէ այդ, այլ որովհետեւ անոնց տուները կամ այգիները տակաւին անծանօթ են անոր։ Այսպիսիք գիւրացուցած պիտի ըլլան Տէր Հօր գործը, եթէ հաճին իրենց ճշգրիտ հասցէն հաղորդել իրեն։*

## ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀՈՎՈՒԻՆ

*Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ։*

*Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ։*

*Երբ գիտես թէ խռովեալներ կան։*

*Երբ գիտես թէ նորեկ կայ։*

*Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ։*

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավենիւ,—

—Թէլէֆոն 4138- W—

ԷՋՄԻԱԾԻՆ

Կրօնա-Բարոյական Ամսաթերթ

Հրատարակութիւն՝

ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ

Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար

*Նամակ, ծրար եւ. ղրկուելու են վարի հասցէով։ Բաժանորդագինը կանխիկ է։*

VOL I, NO. 6 JUNE, 1918 PRICE 10 CENTS

# ETCHMIADZIN

A RELIGIOUS MONTHLY PAPER

PUBLISHED BY

REV. V. V. KASPARIAN

P. O. Box 290 Fresno, Cal.

SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR

Entered at the postoffice at Fresno as second class mail matter